# ՆՇԽԱՐՔ
# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ
ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԹԱՐԳ.
ՄԱՆՈՒԹԻՒՆՔ ՆԱԽՆԻ
ՄԱՏԵՆԱԳՐԱՑ





ՅԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
—1870—

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԹԱԹԱՐԱՑ

## ՎԱՐԴԱՆԱՅ ՊԱՏՄՉԻ

ՀԱՆԵԱԼ Ի ՁԵՌԱԳԻՐ ՕՐԻՆԱԿԱՑ

ԹԱՆԳԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ





ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ

—1870—

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Առաջին հատոր Նշխարաց Հայ մատենագրութեան, հատուած 'ի լոյս ընծայել, որ պարունակէ զծագմանէն և զբարոյից և զպատերազմաց Թաթարաց : Եւգրեալ է Վարդանայ պատմչի յաշակերտացն Վանականայ Վարդապետի 'ի ԺԳ դարու. 'ի 1247 և ընդօրինակեալ 'ի 1272. և օրինակն զոր ունիմք 'ի ձեռս ձեռագիր է նորին Գրիգորի Երիցու Ախնոյ անապատի 'ի Կիլիկիա : Օրինակս ունի առանձին յիշատակարան զգրողէն. սակայն 'ի լուսանցս օրինակին ասէր արէք պետանի գրեալ նովին ձեռագրով " Ողորմեա՛ Տէր, Վարդանայ ծառայի քո ": Նա էր՝ կից է օրինակս Միխայէլ Ասորւոյ կաթողիկոսի ժամանակագրութեանն, որ յայտնի թարգմանութեամբ է նորին Վարդանայ 'ի յիշատակարանին ծանուցեալ : Եւ ոճն և ընթացս պատմութեանն յոյժ վկայեն զայս նորին լինել հեղինակութեան : Յորում 'ի պատմութեանս Թաթարաց պատմի և զՀայոց թագաւորութենէ, որով և մեծ համարի պատմութեան Հայոց : Զոր 'ի գլուխս գլուխս բաժանեալ ըստ զանազանութեան պարագայից 'ի սմա պատմելոյ, տամք 'ի տպագրութիւն.



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա.

### Վասն Ազգին Նեստորեաց թէ ուստի՞ կամ յորմէ՞ ցեղէ առնեցին եւ տիրեցին բազում աշխարհաց եւ գաւառաց։

Յետ ելանելոյ աստուածատեղծ մարդոյն Ադամայ 'ի դրախտէն, և պատուիրելոյ նմանն Աստուծոյ քրտնաջան աշխատութեամբ ուտել հաց զամենայն աւուրս կեր, յաղագս խաբման կնոջն և դաւաճանութեան ակեղծ օձին, վասն մոռանալոյ զգեղեցիկ պատուիրանն Աստուծոյ. և 'ապա յայնմ՝ հետէ կարօտացաւ բնութիւն մարդոյն հեշտութեան և մարմնական զբաղման։ Իսկ բանաւորկուն սատանայոյ վասն չար նախանձուն իւրոյ՝ հանապազ ուսուցանէր զմարդիկ գործել զանարժանս. որպէս կայենին՝ զեղբայրասպանութիւնն, և անօրէն հակայիցն՝ զլօրանալն 'ի մեղս և ուտել զմեռելոտիս։

Եւ զայս տեսեալ արարիչն բարկացեալ վասըն չար գործոց մարդկանն՝ Ջրհեղեղաւ կորոյս զամենեսեան. պահելով սերմն մարդկութեան

փերանելի արդարոյն զՆոյ։ Ուստի յետ տասն ծննդոցն Նոյի արդարոյ, ծնաւ հայրն հաւատոյ որդին Թարայի մեծն Աբրահամ՝ որ հայր վերամբարձ անուանեցաւ. վասն զի 'ի սմանէ սերեցան բազում ազգք և այլնք, յաղագս օրհնութեանն Աստուծոյ որ ասացաւ նմա, «բազմանալ զաւակի նորա իբրև զաստեղս երկնից և որպէս զաւազ առ ափն ծովու»։ Ուստի և կատարեցաւն իսկ։

Զի յաղագս կնոջէն Աբրահամու ծնաւ Իսահակ. և 'ի նմանէ Յեսաւ և Յակովբ. և 'ի Յակովբայ երկոտասան նահապետքն. և մեծ մարգարէն Դաւիթ. ուստի յայտնեցաւ 'ի տանէ և յազգաթունէ Դաւթի Բանն Աստուած տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Իսկ յաղախնացն Աբրահամու, որ են անուանք նոցա միոյն Հագար և միւսոյն կենդուրայ. 'ի կենդուրայ ծնաւ Իմլան, որ են Պահլաւք. ուստի քաջն Արշակ, և սուրբն Գրիգոր լուսաւորիչն Հայոց. իսկ 'ի Հագարայ՝ Իսմայէլ, որ Թարգմանի լսումն Աստուծոյ, ուստի Իսմայէլացիք։ Զոր հրամայեաց Աստուած Աբրահամու 'ի ծննդեանն Իսմայէլի տալ նմա զպարարտութիւն երկրի, և առնել զնա յազգ մեծ. և ձեռք նորա 'ի վերայ թշնամեաց իւրոց, սրով և աղեղամբ առաւել քան զամենայն ազգս աջողեալ։

Իսկ Յեսաւայ յորդւոյն Իսահակայ ծնան Յեսաւացիք, որ են Սկիւթացիք սեաւք և վայրագք և այլադէմք. և 'ի նոցանէ ծնան Բո-

բամիճք և Լեկզիք, որ բնակին 'ի ծակս և 'ի գարանս, և բազում ոճիրս գործեն ։

Եւ ասի թէ Եգանոսյեցիք այլ 'ի սմա ծնընդոցն են, որ են Ֆռանգք ։ Ուստի և խառնեալք 'ի միմեանս երեք ազգս այս Հագարու, Կենտուրայ և Եսաւայ, և ծնան 'ի սոցանէ ծնունդ այլազգէմ աղղեցութեամբ չարին, և անուանեցան Տաճար. որ ասի սուր և թեթև ։

Իսկ սուրբն Ներսէս ասէ զսա 'ի Մնացորդացըն Հագարու՝ խառնեալ ընդ ազգին Գոմգայ, որ 'ի Թորգոմայ, որք ունին զՍկիւթիացան երկրի. որ սկսանի յԱթլ գետոյ առ Եմաւօն լերամբն՝ ձգեալ մինչև 'ի ծովն Կասբից. ուր բնակեալ են ազգք երեսուն և երեք, որ խժական անուամբ կոչին Խուժ և Դուժ. այսինքն ազգք առանձնականս ։ Եւ գլխաւորին ամենեցուն ասի Բուշխ ։

Եւ յազգացն այնոցիկ միոյն ասի Թուղարք. զոր կարծեմք թէ այս է, որ ասին Թաթարք ։

## ԳԼՈՒԽ Բ.

### Վասն կեցութեան, կրօնից, օրինաց եւ գլխաւորի նոցա ։

Եւ որպէս յոմանց 'ի նոցանէ լուաք, ելին 'ի Թուրքաստան աշխարհէն իւրեանց ազգն այն, և մեկնեցան 'ի կողմ ինչ մասին արևելեայց, և կային անդ աւազակութեամբ. վաչբենաբնակք և յոյժ աղքատք զբաղում ժամա-

ծնակս ։ Եւ սպաշտօն ինչ ոչ ունէին բայց միայն պատկերս Թաղէայ․ զոր տնկաւին կրէին ընդ ինքեանս 'ի պէտս կախարդութեան ։ Բայց ընդ արեգակն զարմանային, որպէս ընդ զօրութիւն ինչ աստուածային ։

Եւ ապա յանկարծակի ուշաբերեալք, յօժնեղեալք 'ի թշուառական և յաղքատ կենացն, կոչէյին յօգնութիւն զԱստուած զարարիչն երկնի և երկրի․ և ուխտեցին նմա ուխտ մեծ կալ 'ի հրամանս նորա ։

Որոյ երևեալ հրեշտակ հրամանաւն Աստուծոյ 'ի կերպարանս ակնափնտուր արծուոյ, և կոչեալ 'ի ձայն և 'ի բարբառ նոցին լեզուի զգլխաւորն նոցա, որոյ անուն տիւր Չանկըզ․ և նա երթեալ կացեալ հանդէպ արծուակերպ հրեշտակին հեռագոյն և 'ի բացոյս իբրեւ 'նետընկէց մի․ և այս արծիւն ըստ նոցա լեզուին ասաց զամենայն հրամայեալն Աստուծոյ ։

Եւ այս է օրէնքն Աստուծոյ, որ եդեալ է 'ի նոսա, զոր անուանեալ են թուրքանքն խասաւաղջին՝ որ սիրեն զմիմեանս․ երկրորդ՝ մի շնալ․ մի գողանալ․ մի սուտ վկայել․ մի զոք մատնել․ պատուել զծերս և զաղքատս ։ Եւ եթէ գտցի 'ի նոսա յայսպիսի մեղանաց, ըսպանցեն գործողքն մեղացն ։

Եւ մինչ զայս ուսոյց հրեշտակն, ապա կոչեաց զանունն գլխաւորին Ղայան․ որ և ասացաւ Չանկըզ Ղայան կամ Չանկըզ խան ։ Եւ ասաց հրեշտակն տիրել 'ի վերայ բազում ազ-

խորհեաց և դաւառաց. և բաղձանաւ նոցա ան-թիւ և անհամար բազմութեամբ. որ և եղեն իսկ։

Եւ կատարեցաւ առակն 'ի տեսանէ, որ-պէս 'ի ձեռն մարգարէին սպառնայր Աստուած ասելով. թէ « Բաժակ ոսկի է 'ի ձեռին ի-մում Նաբուքոդոնոսոր, և ում կամիմ՝ արբուցանեմ զնա »։ Այսպէս և այլազգեամ ազ-գըս այս ոչ միայն բաժակ, այլ և մրուր դառ-նութեան հասեալ 'ի վերայ մեր, վասն բազում և ազգի ազգի մեղաց մերոց. զի զօրհանապազ բարկացուցանեմք զողորմածն Աստուած 'ի գոր-ծըս մեր։ Վասն որոյ զարթոյց զսաստս իւր բարկութեամբ առ 'ի խրատել զմեզ, վասն ոչ պահելոյ մեր զպատուիրանս նորա։

ԳԼՈՒԽ Գ.

Առաջին պատերազմ Թաթարաց ընդ Պարսիկս. ապա ընդ Աղուանս եւ ընդ Վիրս. եւ դիմա-դրութիւն եւ երկայնակեցութիւն նոցա։ Հպա-տակութիւն Հայոց եւ Վրաց։

Իսկ յորժամ իմացան այլազգեամ ազգն այն, թէ կամք է Աստուծոյ տիրել մեզ 'ի վերայ երկրի. ապա այնուհետեւ զօրաժողով լեալ, գնացին 'ի վերայ Պարսկաց, և առին 'ի նոցանէ փոքր քաղաք մի։ Եւ Պարսիկքն զօրացեալ ա-ռին դարձեալ զբերանացն և զնոցայն։

Եւ ապա դարձեալ ձայն ձգեցին յազգն

իւ րեանց ուր և կային բնակեալ ազգն եստղեց.
և այլ եւս դարձեալ յարձակեցան 'ի վերայ
Պարսից և յաղթեցին նոցա, և առին զքաղաք
և զամենայն ինչս նոցա ։

Եւ 'ի վերայ այսր ամենայնի՝ դարձեալ հը-
րաման առին 'ի Ղանէն իւրեանց, որ կոչեցաւ
Չանկըզ Ղան. և յարձակեցան 'ի վերայ աշ-
խարհին Աղուանից և Վրաց ։

Եւ զայս լուեալ Թագաւորն Վրաց զհամ-
բաւ գալոյ Տաթարին, եւ ընդդէմ նոցա վաթ-
սուն հազար հեծելով 'ի դաշտն մեծ, որ կոչի
Կոտման. որ կայ առաջի տերուննական բերդին.
Եւ յորժամ խմբեցաւ պատերազմն, յայն ժա-
մին ազդեցութեամբն սատանայի՝ որ հակառակ
է նա ճշմարտութեանն՝ ոէրին Մանասադմաց Հա-
միզաւլայ անուն՝ յաղագս քինու ինչ ըլատեաց
զձին Աթաբակ Իւվանէի. զի յայնմ ժամանա-
կի մեռեալ էր Թագաւորն Վրաց Լաշէն. և
մնացեալ էր սմա ուստր մի Դաւիթ անուն և
դուստր մի Ռուսուդուքան անուն. և անկեալ
էր Դաւիթն 'ի ձեռս Հոռոմոց Սուլտանին. և
կայր 'ի բանտի. և քոյր նորա Ռուսուդուքան
ունէր զԹագաւորութիւնն վերակացութեամբ
Իւվանէի. որոյ Աթաբակ անուանեցաւ ։

Իսկ յորժամ եհաս համբաւ գալոյ Տաթա-
րին ըստ վերագոյն ասացելոցդ. յայնժամ առ-
եալ Իւվանէ զհեծեալ Թագաւորութեին Վրաց.
և եկն 'ի Գագ՝ առ մեծ և իմաստուն իշխանն
Վարհամ, որդի Պլու Զաքարէի. և առեալ
զնա զօրօք իւրովք գնաց ընդդէմ Տաթարին ։

Եւ առեալ կորովի և մեծ իշխանն Վարհամ զաղջոյ Թեւն , և խուժանէ զձախոյ , և յորժամ յարձակեցան 'ի միմեանս այս ոճիրս գործեցաւ՝ ( որ գրեցաւ ) 'ի ձեռն անիծելոյն Համիդուլայ ։

Իսկ յորժամ ետես ազգն Նետողաց այսպիսի երկպառակութիւն 'ի նոսա , յայնժամ զօրացեալ յարձակեցան 'ի վերայ Վրաց հեծելոյն, և յանխնայ կոտորեցին զնոսա ։

Իսկ մեծ իշխանն Վարհամ տէրն Գագայ առեալ զաղջոյ Թեւն՝ մինչեւ յերեկոյն գնաց կոտորելով զՏաճարն յանխնայ յարձակմամբ . մինչեւ առ հասարակ լցաւ դաշտն Սագամից կոտորեալ Տաճարով ։ Եւ ինքն Վարհամ իշխանն Գագայ լուաւ զկոտորումն Թագաւորութեանն . յայն ժամն մեծապէս տրտմեալ և թողեալ զզօրն պատերազմին , դարձաւ յամուրս բերդին իւրոյ որ կոչի Քարհերձ ։ Եւ այս եղեւ 'ի թուականութեանն Հայոց վեց հարիւր վաթսուն և երեք ։

Եւ յետ երից ամաց անցանելոյ դարձեալ եկն Տաճարն , և էառ զԳանձակ շահաստան . և յանխնայ կոտորեաց և գերեաց, և դարձաւ յերկիրն իւր բազում աւարաւ և գանձիւք ։

Իսկ եթէ զինչ նմանութիւն ունէր առաջին Տաճարն , ասասցուք և զայն եւս ։ Զի ոչ էին իբրեւ զմարդ առաջինքն , որ եկին 'ի վերին երկիրն . այլ էին ահագինք տեսողաց և անպատմելիք . զի գլուխն մեծ էր իբրեւ զզամիշու . աչքերնն՝ իբրեւ զձագու . քիթն կարճ՝

իբրեւ զկատուի . զունչն մռունչ իբրեւ զշան . մէջքն՝ բարակ զինչ մրջիւն . ատամերն կարճ զերթ խոզի . մօրուս բնաւ իսկ չունէին . տաւլաթ ունէին զառ իւծու . ձայնն ճչող զերդ արծուի . ուր չկարամէր , անդ գտանէր : Կանայքըն իւրեանց ունէին գգակոնի տուլուլի վերանալի ; ծածկեալ չարագուրով փրպակի . երեսըն լոյն սեւերի սպանմամբ գեղով ծեփէին . իժի նման ծնանէին , և զայլս սէս կերակրէին Մահն 'ի նմա խուլի չերեւիւր . վասն այն՝ որ երեք հարիւր տարի ապրէին . այս ցեղ էին առաջինքն որ եկին յաշխարհն մերին . և հաց ամենեւին չուտէին :

Դարձեալ այլ եւս հրաման առեալ 'ի Ղանէն , և եկին երեք գլխաւորք 'ի վերայ Աղուանից և Վրաց , և առին բազում քաղաքս և բերդս , և էին անուանք նոցա միոյն Զաւրման , երկրորդին՝ Բենալ , երրորդին՝ Մուլար . և եդեալ 'ի վերայ բերդերացն հիւսար անհամար հեծելովք . և առին զառաջինն Ըզ Շամքաւր հուպ առ Գանձակ . որ յառաջ առեալ էին . առին զՍագամ , զՔարհերձ , զՏերեւեն . զմեծ գիւղն Թագաւորանիստ . զԳարդման , զԵրքեւանքն , զՄծբնայ բերդ : Առին և գործով զամուր դղեակն զՏաւուշ . որ էր աթոռ Սուլտանի . առին զաներուանականն և զնոր բերդըն . առին և զՔարին(1) մեծ վարդապետին բա-

(1) Այժմ՝ յորջում նոքեր և սուսայաներ , ուր ճայթ և էնինէշէյ մի արդարքեալ . Կիրակոս .

զուամ՝ ընչիւք 'ի լի . և տարան զինքն զփառա-ւոր վարդապետն մեր Վ՛անական՝ ծառայ աշա-կերտօքն իւրովք : Իսկ երկիրն ամեն 'ի միա-ոյն ցաւանկից լեալ , ետուն բազում գանձս և ոսկիս , և գնեցին զվարդապետն իւրեանց ա-շակերտօքն :

Յետ այսորիկ յորժամ իմացան իմաստուն իշխանքն Հայոց և Վ՛րաց , թէ Աստուած է տուեալ զօրութիւն և յաղթութիւն նոցա առ-նուլ զաշխարհս մեր , ապա գործ և սէր կա-պեալ , գնացին 'ի հնազանդութիւն Տաթարին , և խոստացան տալ հարկս այսինքն մալ և թա-ղար . և խնդրեանք հեծելով գնալ ընդ նոսա ուր և առնիցին . և հաւանեալ Տաթարին թողին զկոտորումն և զաւերումն աշխարհին . և ին-քեանք դարձան 'ի տեղիս իւրեանց յերկիրն Մուղանայ : Բայց թողին գլխաւոր մի Ղարա Բուղայ անուն , քակել զամենայն ամուրս երկ-րին զոր առեալ էին . զոր և քակեցին 'ի հի-մանց զանառիկ բերդսն զշինեալսն 'ի Տաճկաց բազում ծախիւք : Եւ այս այսպէս գործեցաւ :

## ԳԼՈՒԽ Դ.

Ասոց գխաւոր , վերստին յարձակումն Թաթա-րաց , եւ յետս կոչն յաւերեչոյ ցաշխարհս նուաճեալս . եւ բաժանումն աշխարհաց 'ի գլխաւորսն :

Յաւուրս յայսոսիկ երևեցաւ աստղ մի գիսաւոր աւուրք ինչ . և դարձեալ ծածկեցաւ :

Նոյն և 'ի յայս աւուրքս խաւարեցաւ արեգակըն 'ի վեց ժամէ աւուրն մինչև ցինն ժամն:

Իսկ երեք գլխաւորքն որ ասացաւ առին զաշխարհն Վրաց և Աղուանից, և դարձան յերկիրն Մուղանայ, որ միշտ կանաչ լինի խոտն ամառն և ձմեռն վասն պայծառութեան երկրին և քաղցրութեան օդոյն. և անդ կացեալ աւուրս ինչ, դարձեալ այլ ևս խորհեցան գալ 'ի վերայ քրիստոնէից, առ ոչինչ ունելով և համարելով զկոտորումն և զգերումն քրիստոնէից յաշխարհէն Վրաց և Աղուանից: Որ և զԱնուանի քարն Հմեղայ առին. և բիւրք բիւրուց կոտորեցին 'ի նմա. որ և թիւ ոչ գոյր կոտորելոցն. և զողջայն գերեցին յամենայն աշխարհէն անթիւ բազմութեամբ: Եւ այսու ոչ յագեցան. այլ դարձեալ խորհեցան գալ 'ի վերայ երկրին, և առհասարակ կոտորել զամենայն երկիրն:

Իսկ Նախախնամութիւնն ամենակալին Աստուծոյ ոչ առնէ անտես զյուսացեալսն անա. զի անարժան խորհուրդս նոցա և զանիրաւ խափանեաց, և զերից գլխաւորացն՝ որ ասացաւ, զերկուսն սատակեաց:

Եւ թէ զի՞նչ խորհեցան, ասասցուք սակաւիկ: Երեկոյն արարին խուռուլթայ, որ ասի ժողով, և խորհեցան կրկին ևս դառնալ 'ի վերայ կալեալ երկրին, և առհասարակ կոտորել. և զայս ոչ երեքն միաբան խորհեցան. այլ և երկուքն: Իսկ Չաւրմանն բարի խորհրդով ասէր 'ի հրամանէ Նախախնամութեանն Աստու-

ծոյ, բաւական լինել զաւերումն և զկոտորումն աշխարհի. ասելով թէ չէն միայն ասէ, զերկիր վաստակեն, եւ զկէսն մեզ տան զապրանացն զայգւոյ և զարտոյ, և կիսովն ինքեանք ապրին։

Եւ մինչ ՚ի յայս խորհուրդս էին, օրն ե-րեկոյացաւ և խաւարութեան խափանեցաւ և ՚ի քուն մտանէին. և մինչ լուսացաւ, անտին զերկուս զլխաւորսն մեռեալ, որք զչարսն խոր-հեցան. և միւսն էր կենդանի, որ զշինութիւն և զխաղաղութիւն երկրին կամեցաւ. որոյ ա-նունն էր Չաւրման։

Եւ ապա եղեալ Չաւրմանն մկրտիւք բա-նիւ պնոց առ մեծ զլխաւորն իւրեանց Չանկըզ Ղանն. և պատմեաց զամենայն խորհեալսն զիւրն և զերկուց զլխաւորացն, զնոցա սատակումն և զիւր կենդանի մնալն ՚ի միում գիշերի։

Իսկ Ղայանն իբրեւ լուաւ, զարմացեալ ա-սաց ցՉաւրմանն. այն զինչ երկու զլխաւորքն խորհեցան, չէր հաճոյ Աստուծոյ. վասն այն յանկարծամահ եղեն։ Իսկ դու վասն բարի խորհրդոյ քոյ ոչ մեռար. զի Աստուծոյ կամքն է առնուլ զերկիր և ՚ի շինութիւն պահել. և դնել աստախ կալ ընդ հրամանաւ մեր, և տալ մեզ տղղու և մալ և թաղար և զփչուր։ Իսկ զայնոսիկ որ ոչ հնազանդին հրամանաց մեր և ոչ տան մեզ հարկ, զայնոսիկ սպանանել և ըզ-տեղին քակել։ Որ այլքն որ լսեն և տեսանի-ցեն, երկիցեն և ոչ արասցեն այնպէս։

Եւ զայս ասացեալ Ղայանն ապա հրամայ-եաց Չաւրմանին գնալ և պահել զաւխան իւր

զոր խորհեցաւ և ապրեցաւ ՚ի մահուանէ։ Եւ եւս զբարեմիտ կինն իւր զԱյթանա խաթունն Զաւրմանի՛, և անուանեաց զնա Զաւրմաղան։ Իսկ Զաւրմաղանն առեալ զբարեսէր և զշնորհաւոր կինն Զանկըզ Խանին զԱյթանա խաթունն. եկն նստաւ ՚ի Մուղան, որ է ձմերոց Տաթարին հանդերձ հարիւր և տասն գլխաւորօք։

Եւ ապա արարին խուռուլթայ և ժողով մեծ հրամանաւ Զաւրմաղանին, և բաժանեցին զերկիրս ՚ի միմեանց վերայ հարիւր և տասն գլխաւորքն։ Արարեալ ընդ երեք մասն զաշխարհս, բաժին մի գնացին ընդ հիւսիսոյ կողմն. և բաժին մի ընդ հարաւ, և բաժին մի ընդ մէջ երկրի, որ այժմ ունին դեռ եւս։

Իսկ անուանք գլխաւորացն որ ՚ի մէջ երկրիս մնացին, են այսոքիկ. Ասութու նուինն. որ էր ասկր Ղանին. Զաղատայն՝ որ Ղան կոչեցաւ. և յետոյ Սանիթայ. միւս այլ փոքր Զաղատայ. Բաչու նուինն, որ դրին գլուխ ամենայն զօրացն. Ասար նուինն. Խութլթու նուինն. Թուլթաու նուինն. Ա. գաւթայ նուինն Խոջայ նուինն. Խուռումչի նուինն. Խունան նուինն. Թենալ նուինն։ Անգուրագ նուինն։

Նոյնպէս և այս երեքտասան գլխաւորքս բաժանեցին ՚ի միմեանց վերայ զերկիրն Վրաց և Աղուանից լեառնով և դաշտով. և զմեծ տունն Զաւրմաղանին բերին ՚ի Կանձակ շահաստան. որ զառաջինն աւերեալ և յետոյ այլ շինեցաւ։

## ԳԼՈՒԽ Ե.

### Հարկատուութիւն իշխանացն Վ՟րաց եւ Աղուանից. եւ Վ՟անական ջարդարեալ Հայոց:

Իսկ մեծ և անհարկ իշխանքն Վ՟րաց. և Աղուանից եղեն ընդ հարկաւ Նոցա՝ որ կամաւ և որ ակամայ. և տային անխափան զամենայն սահմանեալ հարկսն. զոր յառաջագոյն գրեցաք. և ինքեանք ըստ ուժոյ և ըստ կարողութեան իւրեանց հեծելովք գնային ընդ Նոսա ՚ի խաղան. և առնուին զոչ հնազանդեալ քաղաքս և զբերդս աւերելով և գերելով. և կոտորելով անխնայ զայրս և զկանայս զքահանայս, և զկրօնաւորս. գերելով զարկաւագունսն ՚ի ծառայութիւն իւրեանց. կողոպտելով զեկեղեցիս քրիստոնէից աներկիւղաբար. և զգաւառական Նշխարս սրբոց և զխաչս և զգիրս մերկացուցեալ ՚ի զարդուց, առ ոչինչ համարեալ ձգէին ընդ փայր: Եւ արդ՝ զո՞ր ասէս և զպատահումն ժամանակիս գրեցից. զանժամանումին հարց և մարց ՚ի յորդւոցն. թէ զսիրելեաց և զմերձաւոր ընտանեաց զխափանումն սիրոյն. զկի րեոյ ապականեալ ընչիցն առնումն, թէ զգեղեցիկ ապարանացն ՚ի հրոյ ծախումն. զմանկանցն ՚ի գիրկս մարցն զենումն. թէ զգեղեցիկ և զփափկասնունդ երիտասարդաց և ըղկուսից բոկ և մերկ գերումն:

Վա՜յ անցաւորիս. կարծեմ թէ ամենայնն

յիմոց պարտեացն հանդիպեցաւ . զոր տեսին և արարիչն մեր . այն որ ներող է և երկայնամիտ այց արասցէ հօտի իւրոյ , զոր գնեաց պատուական արեամբն իւրով ։

Յայսմ 'ի նեղ և 'ի դառն ժամանակիս փայլէր իբրև զարեգակն սուրբ հոգի վարդապետըն մեր Վ_անական յերկիրն արեւելեան . երկրորդ արեւելք անուանեալ . լի լուսով և անհաս գիտութեամբ ամենիմաստ Հոգւոյն սրբոյ . զոր և քարոզմամբ երկնայնովք և աշխատութեամբ ձրի բաշխէր զկերակուրն հոգեւոր , այսինքն զբան վարդապետութեան Հոգւոյն , նմանեալ երկնաւոր վարդապետին Քրիստոսի հեզութեամբ և խոնարհութեամբ , լռութեամբ և երկայնմտութեամբ ։ Սիրող սրբոց և սրբութեանց խաչի և եկեղեցւոյ . ժողովատեղեաց և ժամարարաց , քահանայից և կրօնաւորաց ։ Առ մեծամեծն՝ անհարկու . առ աղքատսն և կարօտեալսն՝ քաղցըր . առ մեղուցեալսն՝ անոխակալ . գնելով ըղդեղ ապաշխարութեանն թեթեւագոյնս , որպէս զի կարող լինիցին տանել զլուծ ապաշխարութեանն , և վերստին նորոգել հոգւով եւ մարմնով , և կալ հաստատուն 'ի հաւատս ճշմարիտս . փառաբանիչս և երկրպագուս ամենասուրբ Երրորդութեանն ։

Նոյնպէս և գովելի աշակերտքն իւր Վ_արդան և Կիրակոս . Առաքեալն և Յովսէփ խաչանման բաժանեալ զաշխարհն արեւելից լուսաւորեցին կենարար վարդապետութեամբ Հոգւոյն սրբոյ . Այլ և բազում որդիս 'ի փառս

ածին ձրի բաշխելով զոխրական և՛ զխաչանիշ
զաւազանն նմանեալ փառաւոր վարդապետին
իւրեանց . կատարելով զտեառն հրամանն թէ
« Ձրի առիք և ձրի տուք » . զոր և զկեանս նո-
ցա տացէ Եկեղեցւոյ իւրոյ Քրիստոս Աստուած
ընդ երկայն ժամանակս . ամէն ։

## ԳԼՈՒԽ Զ ։

### Պատերազմունք եւ աւերածք՝ Բաչու նուինին 'ի Կարնոյ քաղաք եւ 'ի Հոռոմս։

123?

Ի վեց հարիւր յութսուն և ութ թուին Հայոց զօրաժողով լեալ Բաչու Նուինն գլխաւորըն Տաթարին , եկն 'ի վերայ Կարնոյ քաղաքի անթիւ բազմութեամբ . և ածեալ 'ի հետար զամիսս երկու , առին . և յանխնայ կոտորեցին և աւերեցին զքարելը և զգեղեցիկ քաղաքն ։ Նոյնպէս և զվանորայս երկրին և զհրաշալի եկեղեցիսն անմարդաբնակ արարին գերելով և աւերելով ։ Որոյ Հայոց և Վրաց իշխանքն առեալ բազում՝ գրեանս տօնական և մարտիրողէք , առաջեալ և ընթերցուած , գործք և ոսկեգիր աւետարանք աննման փարթամութբ զարդարած 'ի շինութիւն և դարդ որդւոց Նոր Սիոնի . ուստի առեալ տարան յաշխարհն արեւելից , և լցուցին զվանորայսն ամենայն զարդուք Եկեղեցւոյ ։ Եւ 'ի վերայ այսր ամենայնի զկնի միոյ ամի անցանելոյ ; դարձեալ այլ եւս զօրաժողով եղեն ազգն Նետողաց հան-

դերձ Հայոց և Վրաց իշխանօքն, և եկին 'ի վերայ աշխարհին Հոռոմոց անթիւ բազմութեամբ։

Եւ գլխաւորն զօրուն Բաչու նոյինն յաջողեալ էր 'ի գործ պատերազմի. ուր և հանդիպէր ընդդիմանալեացն իւրեանց, բազում յաղթութիւնս առնէր. բայց պատճառ յաղթութեանն էին Հայոց և Վրաց իշխանքն, որ լինէին երեսք զառաջինն, և ուժգին բախելով 'ի թշնամիս յարձակէին. և ապա զկնի նոցա Տաթարն նետիւ և աղեղամբ։

Իսկ յորժամ մտին յերկիրն Հոռոմոց ելաւ ընդդէմ նոցա Խիաթադին սուլտանն հարիւր հազարօք. և վաթսուն հազարօք. և էր որդին մեծին Ղալուէի առ Սուլտանն 'ի վաղուց ժամանակաց։ Եւ յորժամ կազմեցան 'ի գործ պատերազմին՝ հանդիպեցան զօրք Տաթարին և որդին Ղալուէի հանդէպ միմեանց 'ի ձախոյ թեւն. և մեծոյաղթ իշխանքն Հայոց և Վրաց ընդդէմ Սուլտանին զօրացն յաջոյ թեւն։ Եւ յորժամ սաստկացաւ մարտն, քաջ և անուանի որդին Ղալուէի դարձոյց զՏաթարըն, և զբազում կոտորեաց 'ի նոցանէ։

Իսկ Վրաց իշխանն Տէրն Գագայ, որդին մեծին Վարհամայ թոռն Պղու Զաքարէի Աղբուղայ անուն, քաջապէս մարտուցեալ ընդդէմ զօրու Սուլտանին, հանդերձ այլ ազատագունդ զօրօքն Հայոց և Վրաց որք ընդ նմա, և դարձուցեալ զաջ թեւ զօրաց Սուլտանին, բազումս ամիրայից և մեծամեծաց գլուխս հատեալ, յորժ

տրամեցուցին զՍուլտանն ։ Եւ օրն երեկոյացեալ թողին զգործ պատերազմին, և բանակեցան հանդէպ միմեանց 'ի մէջ դաշտավայր տեղեացն. որ կայ ընդ մէջ Կարնոյ քաղաքի և Երզնկային ։

Իսկ ընդ լուսանալ միւս այլ աւուրն զուգեցան զօրքն Տաճարին և Հայոց և Վրաց գընալ ընդդէմ Սուլտանին 'ի պատերազմ ։ Եւ զօրօքն բազմութեամբ ձիաթող եղեալ 'ի վերայ բանակի Սուլտանին գնացին. և յորժամ հասին 'ի տեղի բանակին այլ ոչինչ գտին, բայց միայն զվրանսն բազում ոսկւօք լցեալ. և զվրան Սուլտանին տեսին բազում գանձիւք զարդարեալ ներքոյ և արտաքոյ, և գազանք կապեալ ինձ առիւծ և յովազ առ դուրս վրանի Սուլտանին. քանզի 'ի գիշերին յայնմիկ փախուցեալ էր Սուլտանն ամենայն զօրօք իւրովք յերկմըտութենէ ամիրայից, որ կամէին հնազանդել Տաճարին ։

Եւ տեսեալ Տաճարին զփախուստ Սուլտանին, կացուցին սակաւ մի 'ի զօրացն պահապանըս զգուշութեամբ 'ի վերայ վրանիցն. առելով թէ խաբէութիւն ինչ է ։ Եւ այլ բազմութիւն զօրացն արձակեցան զհետ Սուլտանին, և ոչ կարացին ըմբռնել զնա, զի յամուրս երկրին իւրեանց հասեալ էին ։ Իբրև գիտացին եթէ ստոյգ փախուցեալ է Սուլտանն Հոռոմոց, դարձան յետս զօրք Տաճարին, և առին զամենայն ոսկիս և զկարասիս նոցա, հանդերձ մեծամեծ գեղեցկակերտանց վրանօքն զոր թողեալ էին

առ ահի Տաճարին, և ինքեանք փախուցեալ: Եւ ապա 'ի վաղուն ուրախութեամբ մեծաւ յարձակեցան 'ի վերայ աշխարհին Հռոմոց. առին զԵրզնկայն յառաջագոյն, և թողին Ռահնայ: Առին զԿեսարիայ և բազում արիւնհեղութիւնս արարին 'ի նմա, վասն ոչ տալոյ ըզքաղաքն. այլ կային ընդդէմ Տաճարին կռուով. վասն զի բազում հեծեալ կայր բնակեալ 'ի նըմա 'լցեալ ամենայն բարութեամբ. և ոչ տային զքաղաքն սիրով: Իսկ խորամանգ զօրք Տաճարին ջան եդեալ առին խոբէութեամբ, և առհասարակ կոտորեցին զմեծամեծսն, և զփոքրունսն գերեցին յանխնայ ամենայն ընչիւք իւրեանց: Եւ դարձեալ առին զԿօնն և զԱխշորն հանդերձ մեծամեծ գեղօք և վանորայիւք: Եւ ապա յարձակեցան 'ի վերայ Սեւաստայ. և գործով առին զնա. բայց ոչ կոտորեցին զնոսա. այլ առեալ աւար զինչս նոցա. և զմարդիկն համարեալ եդին հարկս 'ի վերայ նոցա ըստ սովորութեանն իւրեանց մալ և թաղար. և թողեալ Ռահնա և գլխաւորս երկրին Հռոմոց, և ինքեանք գնացին բազում աւարաւ և գանձիւք և գերեօք, զոր առին յաշխարհէն Հռոմոց յերկիրն արեւելից 'ի բնակութիւնս և յուրդդահս իւրեանց:

## ԳԼՈՒԽ Է.

### Խորհուրդ եւ հարկատուութիւն բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ՝ Թաթարաց։

Իսկ բարեպաշտ և քրիստոսասէր թագաւորին Հայոց Հեթմում հանդերձ ամենայն իմաստութեամբ լցեալ հարբն իւրով և աստուածապահ եղբարքն և իշխանօքն 'ի խորհուրդ մտեալ՝ հաստատեցին 'ի միտս իւրեանց հնազանդել Տաթարին և տալ հարկս և խալանս, և ոչ թողուլ զնոսա յաստուածաշէն և 'ի քրիստոնէաժողով երկիրն իւրեանց. զոր և արարին իսկ։ Վասն զի յառաջագոյն տեսին զԲաչուն զգլխաւորն զօրաց Տաթարին, և հաստատեցին դաշինս սիրոյ և հնազանդութեան. և ապա զկնի այնորիկ առաքեցին զեղբայր թագաւորին զասպարապետն Հայոց զպարոն Սմբատ առ Սային Ղանն ( Չանհին խա՛ն ), որ էր նստեալ 'ի յաթոռ Չանկըզ խանին։ Եւ երթեալ ըստ յաջողելոյն Աստուծոյն ետես ըզՍային Ղանն այն յոյժ քրիստոնէասէր և բարեսէր։ Վասն այնորիկ ազգն իւրեանց անուանեցին զնա Սային Ղան. որ է ըստ լեզուին իւրեանց աղէկ և լաւ Ղան։

Եւ տեսեալ զասպարապետն Հայոց Սային Ղանն, յոյժ ուրախացաւ վասն քրիստոնէութեան հաւատոյն. և. եւս առաւել վասն կորովի և իմաստուն բանիցն՝ զոր խօսեցաւ ասպարապետն Հայոց Սմբատ առաջի նորա. եւ

արարեալ զնա սղամիշ, և տուեալ մեծ խառ-
լախ և փայիղայս ոսկիս եւ Ցամթար խաթուն
պատխատախուոր. զի այն էր նոցա մեծ սէրն,
որ զ'իլ սիրէին եւ մեծարէին, տային կին 'ի
պատուաւոր կանանցն իւրեանց. և այսպէս մեծ
մեծարանօք պատուեալ զապարապետն Հայոց,
ժողովեաց յաշխարհս իւրեանց առաջի քր-
իստոսապսակ թագաւորին Հայոց Հեթմոյ.
հրամայելով նմա գնալ առ ի՛ւքն և տեսանել
զնա: Զոր տեսեալ բարեպաշտ թագաւորն
Հեթում զպարոն եղբայ. ն իւր զՍմբատ այն-
պիսի պատուով պատուեալ և մեծարեալ 'ի
Ղանէն, յոյժ ուրախացաւ յուրախութիւն
մեծ. և ետ տուաւել ընդ գրեալն վասն ապա-
տուլթեան երկրիս և վանօրայցս եւ ամենայն
քրիստոնէից:

## ԳԼՈՒԽ Ը:

### Դարձ եւ Թագաւորութիւն արքայորդւոյն Վրաց Դաւիթի 'ի կալանաց Չանիւք Վարդամայ հրամանաւ մեծի Ղանին:

Իսկ քաջ և անուանի զօրքն Վրաց ոչ ու-
նէին զլուխ թագաւոր իւրեանց 'ի վաղուց
հետէ. և զուստրն Լաշային Ռուսուդուքան մա-
հուամբ փոխեցաւ յաշխարհէս, և՛ Վրիք մնա-
ցին անտերունչք իբրեւ զհօտս, որոյ ոչ իցէ
հովիւ: Այպա 'ի նախախնամութենէն Աստու-
ծոյ ընդ միա արկեալ զօրքին թագաւորին իւ-

բեանց զԴաւիթ՝ որ էր 'ի բանտի 'ի Հոռոմս. և ըմբռնեալ արս գլխաւորս 'ի զօրացն Հոռոմոց իշխանքն Վրաց, տարան առ Բուղայն՝ որ էր գլխաւոր Տաթարի, և ետուն չայլ չարանօք հարցանել զնոսա վասն Թագաւոր որդւոյն Դաւթայ. և 'ի նեղելն զնոսա հարցմամբ և սաստիկ գանիւ, որպէս սովորութիւն է Տաթարին, եկին 'ի խօսս, և ասացին թէ կայ յերկաթ և 'ի հորի 'ի Կեսարիա:

Եւ ապա յոյժ ուրախացեալ Վրաց իշխանացն առաքեցին զիմաստուն իշխանն Վարհամ՝ զոէրին Գագայ հրամանաւ Բուղայ Նուինին և այլ ամենայն գլխաւորաց Տաթարին. և ետուն զնինի Վարհամայ Տաթար գլխաւոր մի այլ հարիւր ձիաւորով. և յուղարկեցին զնոսա մեծ ուրախութեամբ 'ի Կեսարիա: Եւ իբրև գնացին, գտին կամօքն Աստուծոյ զԹագաւոր որդին Դաւիթ 'ի մեծ և 'ի խոր վիրապի. իսկ կամքն Աստուծոյ պահեալ էր զնա կենդանի 'ի խոր բանտին. և իբրև տեսին զօրք Տաթարին և մեծ իշխանն Վարհամ՝ 'ի հիացման եղեալ վասն կենդանութեան նորա, ետուն փառս Աստուծոյ:

Եւ էր Դաւիթ որդի Թագաւորին Վրաց երկայն հասակաւ, և կորովի, գեղեցիկ պատկերաւ և Թուխ մօրուօք. լցեալ ամենայն իմաստութեամբ և շնորհօքն Աստուծոյ:

Եւ ապա հանեալ 'ի բանտէն, ագուցին նմա հանդերձս պատուականս. և հեծուցեալ յերիվարս առին և գնացին յաշխարհն Վրաց: Եւ յորժամ հասին 'ի քաղաքն Տփխիս, յոյժ ուրա-

խացան իշխանքն Վրաց. և առեալ հրաման ՚ի Բաչոյն նուինէն և յԱյլթանա խաթունէն Չաւրմաղանին ( զի ընդ այն աւուրս մեռեալ էր Չաւրմաղանն, և կինն ունէր զիշխանութիւնն ), որ ետ հրաման և հեծեալ զկնի մեծ իշխանին Վարհամայ. և առաքեաց առ մեծ Ղանն։ Եւ գնացեալ օգնութեամբն Աստուծոյ և տեսեալ զՂանն պատմեցին զեղեալ իրսն վասն Թագաւորորդւոյն. և առին հրաման ՚ի մեծ Ղանէն, բերին նստուցին զԴաւիթ յաթոռ հօրն իւրոյ ՚ի Տփխիս։ Եւ իշխանքն Վրաց յոյժ ուրախացեալ անուանեցին զնա Վարհամուլ Թագաւոր. այսինքն Վարհամէգիր Թագաւոր։ Եւ առ ժամանակ մի խաղաղացաւ երկիրն Վրաց և Աղուանից վասն նոր Թագաւորին նստելոյ։

## ԳԼՈՒԽ Թ.

**Մահ Չաւրմաղանին։ Տ. Կոստանդին կաթուղիկոս Հայոց։ Պարոն Կոստանդին նախկին Թագաւոր Հայոց հայրն Հեթմոյ։ Դաւիթ արքայ Վրաց մատնի յիշխանացն իւրոց։ Մեռանի վանական վարդապետ։**

Իսկ Չաւրմաղանն մեռաւ բարի խորհով. և եթող երկուս որդիս յԱյլթանա խաթունէ կնոջէ իւրմէ. անուն միոյն Սիրամուն, և երկրորդին՝ Բաւրայ։ Եւ էր Սիրամունն բարի ՚ի մանկութենէ իւրմէ սիրող քրիստոնէից և եկեղեցւոյ. և կամօքն Աստուծոյ յաջողեալ ՚ի

գործ պատերազմի. մինչ զի վասն կարի քաջութեանն՝ Ղանեւրին Ոսկի սիւն անուանեցին զնա յետ բազում յաղթութեանց և պատերազմաց։ Իսկ եղբայր նորին վասն չարութեան բարուց իւրոց սպանաւ ՚ի Հուլաւու Ղանէն։

Յայսմ ժամանակի հանդիսանայր պայծառ և առաքինի վարուք հաճոյ Աստուծոյ և մարդկան Տէր Կոստանդին կաթողիկոսն Հայոց, հանդերձ քրիստոսապսակ թագաւորաւն Հեթումաւ. որ և լուսաւորեցին ուղղափառ հաւատով և պայծառ կարգօք զամենայն եկեղեցիս Հայաստանեայց յարեւելս և յարեւմուտս և յամենայն տեղիս։

Իսկ թագաւորահայրն պարոն Կոստանդինն հանդերձ այլ աստուածատուր որդւովքն եւ իշխանօքն կայր վառեալ ընդդէմ զօրաց այլազգեաց և թշնամեաց խաչին Քրիստոսի. և պահէին յուրախութիւն հանապազ զբարեպաշտ և զքրիստոսապսակ թագաւորն Հայոց զՀեթում. հանդերձ գեղեցիկ և պատուական զաւակօքն իւրովք Լեւոնիւ և Թորոսիւ։

Իսկ բարեսէր և գեղեցիկ թագաւորն Վրաց Դաւիթ հանապազ իւր ամենայն թագաւորութեամբն կայր ՚ի մեծ ուրախութեան եւ ՚ի դինարբուս յիւր թագաւորանիստ քաղաքն Տփխիս։ Եւ յաւուր միում էր մեծ ճաշ եւ ուրախութիւն առաջի թագաւորին. և սովորութիւն է Վրաց հանապազ ամբարտաւանել և մեծամեծ բանս խօսել։

Իսկ մի յիշխանացն Վրաց համարեաց ա-

ռաջի թագաւորին զայլ իշխանսն և տայց զթիւ իշխանացն հազար ։ Եւ կային յիշխանացն՝ որ ունէր հազար ձիաւոր պատերազմող , կային՝ որ ունէր հինգ հարիւր . և անկաւ բանս այս 'ի լուր ամենայն թագաւորութեանն , յորժամ եկին անուշուցեալ յուտել և յըմպելն ։ Եւ յորժամ հաշուեցան , և համար արարին զօրացն Հայոց և , ըստ՝ առաջին զկուրեանցն յաղթող լինել 'ի վերայ զօրաց Տաթարին . և բաժանեցին ըզ-գլխաւորսն 'ի վերայ իւրեանց . և այս ոչ թէ ուղորդ խորհեցան և կամ խօսեցան , այլ ստա-կասականս . զի պարապ և անհոգ էին 'ի ցա-ւոց , և այլ թշնամի ոչ գոյր յերկրին արեւե-լից . բայց միայն Տաթարն . որ յամենայն ժամ գային և հարկաւ նեղացուցանէին զՎրաց և զՀայոց իշխանսն . յոմանց ուզէին ոսկի կտաւ . յոմանց՝ բաղայ , յոմանց՝ աղէկ շուն և ձի . և այսպէս նեղացուցանէին զնոսա զատ 'ի մալէն և 'ի թաղորէն և 'ի խալանէն . վասն այնորիկ խօսեցան զայս . բայց ոչ ուղորդ , այլ ընդ խա-ղըս և ընդ կատակս ։

Իսկ մի ոմն յայնցանէ որ անդն կային , Նմա-նեայ Յուդայի մատնչին , գնաց և մատնեաց Տաթարին . զսուտ բանն իւրաւ և ուղորդ դար-ձուցեալ այսպէս ասելով . թէ Վրաց թագաւորն և իւր իշխանքն խորհեցան գալ 'ի վերայ ձեր ։

Իսկ նոցա աւաստացեալ սուտ բանին , դար-ձան 'ի վերայ աշխարհին յաւարի առեալ զա-մենայն ինչս և զխաշինսն . բայց զմարդիկն ոչ կոտորեցին առանց հրամանի մեծ Ղանին . և

## ԳԼՈՒԽ Ժ.

**Մարտին։ Գ. ճիոանհամար յարձակման Հուլաւու ար-քայ Հայոց գնայ առ Մանկու Ղանն, եւ մե-ծարի պատուով։ Եդթն որդիք Եւթն Ղանաց։ Խաւլ ամբարտաւան։ Տ. Ստեփաննոս կանա-հայր Գ. Երեթնի վ. անաց մարտիրոսանայ։ Հի-ւանդանայ Խուլ. եկեղեցագործութիւնք 'ի պատ-ճառս նորա։ Ցաջորդէ զԽուլ Միցան որդի նորա։**

*Իսկ 'ի յաւուրս յայսոսիկ եկն Մարտին սաս-տիկ և եկեր զամենայն աշխարհն արեւելից. մինչեւ առհասարակ երկիրս ամենայն յարե-ւելք և յարեւմուտք 'ի յահէն զարհուրեալ Աստուած ապաւինեցան մեծաւ հառաչանօք. և այսպէս ողջոյնութեամբն Աստուծոյ զերծաւ աշխարհն 'ի յահագին ցասմանէն. և եսուն փառս Աստուծոյ ամենակալին փրկողին յայն-պիսի պատուհասէն։ Եւ այս եղեւ 'ի Թուա-կանութեանս Հայոց յեւթն հարիւրն (1251).*

*Եւ ըկնի ցասմանս այսորիկ եկն գլխաւոր մի Տաթար Արղուն(1) անուն հրամանաւ Մանկու Ղանին. և համարեաց զերկիրն արեւելից վա-րին հարկի. և առնուին այնու հեծանել զհարկն 'ի գլխաւորութեան մարդկանն, քանի որ գրեալ լի-նէր 'ի դաւթարն (2). և այսպէս այլ աւերեցին զաշխարհն արեւելից. զի 'ի մի փոքր գեղն յի-սուն մարդ համարէին, կամ երեսուն. 'ի սոսան*

(1) Մէ գէ. Արղուն։ (2) Տօմար։

և հինգ տարեկանէն ՚ի վերն զամենայն համարէին մինչ ՚ի վաթսուն տարեկանն. և յամէն գլխոյ որ համարէին, վաթսուն ոսկիտակ առնուին. և թէ ոք փախչէր կամ թաքչէր, յործամ ըմբռնէին կապէին անողորմ ձեռս ՚ի յետս և զալըր գաւազանօք ծեծէին՝ մինչ զի մարմինն ամենայն արտաքէր և յարեանն շաղախէր. և ապա անողորմաբար զկապաղի շնորհին իւրեանց, զոր աւարեցուցեալ էին ուտել միս մարդոյ, ՚ի ներքս թողուին և ուտել տային զստացեալն և զչունեւոր քրիստոնեայն.

Իսկ քրիստոնեայք և բարեպաշտ թագաւորն Հեթում, իբրև լուաւ զայս ամենայն բարկութիւնս որ գործեցաւ ՚ի վերին աշխարհն արեւելից, ապա վասն սիրոյ քրիստոնէից եւս առաւել վասն իւր սեպհականն երկրիս, գնաց բազում գանձիւք առ Մանկու Ղանն. և հաղաց շթաղուլ յերկիրս իւր զայսպիսի բարկութիւնս. Եւ յործամ հասաւ առ Ղանն. կամօքն Աստուծոյ մեծարեցաւ ՚ի Ղանէն. Եւ արարեալ Ղանն մեծ պատիւ և հարկիս թագաւորին Հայոց. և զամենայն բանն նորա հաղաց ըստ կամաց նորա. և դարձոյց մեծ ուրախութեամբ յաշխարհն իւր.

Իսկ զկնի այսորիկ և համանեալ թուականին Հայոց յեւթն հարիւր և ՚ի վեցն, եկին յարեւելից ուստի մեծ Ղանն էր՝ եւթն Ղանք որդիք. ամէնն զուամուն մի հեծելով. և մի զուամանն էր երեսուն հազար. Եւ էն անուանք նոցա այս. առաջին և մեծն ՚ի նոցանէ Հուլա-

պիղծ չարչարանօք և զգան հարուածովք տա-
տապէին . նոյնպէս և ամենայն բանակն անկեալ
'ի չար ախտ . և բազումք սատակեցան 'ի նո-
ցանէ : Եւ թէպէտ այս այսպէս գործեցաւ ,
նոքա ոչ վախէին յԱստուծոյ . այլ յամառեալք
համարձակ զխղճի և զդատն աստուածային բանս
գործէին . զի մեծ զխռովութիւն իւրեանց խուլին
այն՝ որ ամբարտաւանեալ նման և եղբայր Աս-
տուծոյ ասէր զինքն , մինչև նա 'ի ցաւ նկըր-
ւոյ . և այն ցաւին պատճառաւ անպատմելի
խեղճ և ողորմ բան գործեցաւ : Զի զնացին
ամենայն ընտանի մի բժիշկ զտան , և բերին
առ խուլն . և յորժամ եսես զցաւ նորա անօրէն
և ասաց բժիշկն այն . պարտ՝ դեղ ցաւ ին . զշեկ
տղայի միոյն կենդանւոյն ձեռքել . և դնել զնա
'ի փոր տղայոյն : Եւ նոյն . ժամայն հանեալ կե-
ծեալ յերկիր , յանկարծակի մտանէին 'ի զե-
ղանն քրիստոնէից և առնուին զտղայոն 'ի փո-
ղոցէն . և գայր այլն փախուցանէին . և ծը-
նողք մանկանցն զկին զնայնին ձիշ և աղաղակ
բարձեալ զառն և աղօթս արտասուօք . և ոչ
կարէին թափել . այլ յետս դարձեալ զնային
ողորմելի սրտով 'ի տուն իւրեանց . Եւ թէ
բռնադատեալ խալէին զմանկունսն , յայնժամ
նենգաւորք լինէին 'ի ծնողս մանկանցն . և այս-
պէս ողորմելի բանս եղեւ 'ի ձեռն անօրէն
Ջհուդին . մինչ զի յերեսուն տղայոյն հասաւ թը-
ւով որ ձեռքէին զփորն , և ոչ լուացաւ : Այլ
իբրև զիտաց անօրէն խուլն թէ այնչափ խեղ-
ճըն գործեաց և ոչինչ օգտեցաւ , ապա յետոյ

Հուլեանու Ղևոնդ մեծախելք, մեծամիտ դատաւ-
ւոր ամենեւին փխուն ՚ի յոյժ արիւնահեղ. բայց
զչարին և զթշնամին օգնականս, և ոչ զբարին
և զբարեսէրս։ Սիրէր առաւել զայդ քրիստո-
նէից քան պաղազգեաց։ Եւ այնչափ օրինաց
զքրիստոնէայսն, որ զմի տարեան հարկն խոյլ է-
առ ՚ի Հայոց զոճեմայր հարիւր հազար. և յա-
մէն տաճիկ քաղաք երկու հազար խոյլ առա-
քեաց և հրամայեաց դնել տաճիկ խայլարանս,
և յամենն շաբաթ դիր մի սապոնով լուանալ. և
զատ ՚ի յարօտոյն, ամեն վաղ և երեկոյ տալ նուշ
և ամսլյաւ խոզերն ուտելոյ. և տաճիկ մարդ ե-
թէ մեծ և եթէ-փոքր որ ոչ ուտէր միս խոզի,
գլուխն կտրիւր։ Եւ այսպէս պատուէր զՏաճ-
կունք. և այս եղեւ ՚ի խիստուէ զօրացն Հայոց
և Վրաց զի յոյժ սիրէր Հուլեանու Ղևոնդ զզօրքն
Հայոց և Վրաց. վասն կարի քաջութեան իւ-
րեանց, զոր առնէին առաջի նորա յամենայն պա-
տերազմունս. վասն որոյ Բռնհատուրս անուանե-
եաց զնոսա. զի զգեղեցիկ և զերիտասարդ որ-
դիս մեծ իշխանացն Հայոց և Վրաց ընտրեաց
և կացոյց դռնապանս իւր, և անուանեաց զնոսա
Քէսրիկ Թոյք. որ են դռնապանք սրով և աղե-
ղամբ։ Սկսաւ և զաւեր տեղիսն շինել. և յա-
մէն շէն գեղէ, մէկ տուն որ հանէին. ՚ի փոքրէն
մէկ, ՚ի մեծէն երկու կամ երեք. և անուանեաց
զնոսա Խամ։ Եւ առաքէր զնոսա յամէն աւեր
տեղիսն առնել շինութիւն. և ամենեւին հարկ
ոչ տալ, բայց միայն հաց և թան Ճանապարհորդ.
Տանթարի։ Ալոպխոփ կարգաց հաստատեաց զիւր

ղանութեան աթոռն. և ինքն նստաւ յուանել և յղփանալ բաղում ուրախութեամբ.

Ընդ աւուրս ընդ այսոսիկ եկն այր մի 'ի Մանկու Ղանէն Մուղալ ազգաւ, և էր այրն այն յոյժ ահագին տեսողացն, երկայն հասակաւ թիկնեղ. շլինին զերդ զգոմիշու, ձեռներն անձոռնի իբրեւ պարջու, և ամեն օրին ուտէր ոչխար մի. և ունէր 'ի Մանկու Ղանէն 'ի հետ գիր և ան-գին կատրայ մի. և գրեալ էր 'ի գիրն այսպէս. Այս անուն բաւական երեկ առ իմ եղբայր Հուլաւու Ղանդ, թէ լինի որ բաւքայ որ զդա ձգէ. զայդ կապայդ նմա հարկս. ապա թէ իմ Բաւքայդ ղքոյն ձգէ, յայնժամն զկապայդ զման հարկ. և մեծ ելչով յիս յղարկեա.

Յայնժամ Հուլաւու Ղանն կոչեաց զամենայն գլխաւորս զօրաց իւրոց. և հրամայեաց թէ գիտէք մարդ Տաթար կամ Հայ կամ Վրացի, որ զդա ձգէ. և որոնեցին 'ի Տաթար ոչ գտին. զի ով տեսանէր զայրն զայն՝ ամենայնն փախէին յահաւորին հասակէն և 'ի տեսոյ նորա: Իսկ Հայոց և Վրաց իշխանքն ասացին թէ մեք գիտեմք մարդ. որ միթէ 'ի նմանէ լինի ճար. և հրամայեաց Ղանն փութով բերել. և ասացին թէ չէ 'ի անդր, այլ կայ 'ի տուն իւր. և հրամայեաց առժամայն ելչեաց շուտով հասուցանել. բայց ոչ ձիով. այլ սայլով. Եւ էր այրն այն զոր առացին Հայոց և Վրաց իշխանքն, յազգէն 'ի Բարձր Արծրունեաց Թոռն Ամիր Քրդին, Սադուն անուն. երկայն և վայելուչ հասակաւ. յոյժ ուժեղ 'ի մանկութենէ և փորձ և կիրթ

կէր հարկեօք և մեծութեամբ և ուժով ՚ի ժամանակս Տաթարին, և հրամայեաց Հուլաւու Ղանն գրել խաւլախ, և թողուլ նմայ մինչեւ ՚ի յիւրն գունաշն:

## ԳԼՈՒԽ ԺԳ.

**Պատերազմունք Հուլաւու Ղանին ՚ի վերայ Հալպայ, Դամասկոսի եւ Երուսաղեմի, եւ մահ նորա:**

Եւ զկնի այսորիկ հրամայեաց Ղանն զօրացըն ժողովել ՚ի սահմէն երկուքըն. և՛ եդ նոցա գլխաւոր զՔիթ Բուղայն, և յուղարկեաց զնոսա ՚ի վերայ Հալպայ և Դամշխայ. և ընդ երթալն առին զՀալպ և յանխնայ կոտորեցին և գերեցին և լցան բազում գանձիւք. և ինքն Հուլաւու Ղանն կալաւ զնացեալ զկնի հեծելին. և յորժամ գիտացին Դամասկացիքն, թէ առին զՀալպ, ապա ինքեանք իւրեանց կամաւ ետուն զքաղաքն և զբանալի քաղաքին ՚ի ձեռս Հուլաւու Ղանին:

Իսկ Երուսաղէմ քաղաքն և սուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ կայր ՚ի ձեռըս Տաճկացն ՚ի Սալահտտին Սուլտանէն ՚ի վեր: Զայս լուեալ Հուլաւու Ղանին գնաց ՚ի վերայ Երուսաղէմ քաղաքին և էառ զնա. և ինքն մտաւ ՚ի սուրբ Յարութիւնն, և երկիր եպագ սրբոյ Գերեզմանին. և թողեալ զզօրքն ՚ի տեղն, և ինքն դարձաւ խաղաղութեամբ յաշխարհն արեւելից:

Իսկ Քիթ Բուղայն որ էր գլխաւոր զօրացն Տաթարին՝ հպարտացեալ անցաւ քան զԵրուսաղէմ՝ 'ի վայր տասն աւուր Ճանապարհ : Իսկ . . . անխրատ Մորցին գիտացեալ զանպատրաստ կենալ զօրացն Տաթարին, ապա զօրաժողով լեալ անթիւ բազմութեամբ եկն 'ի վերայ Տաթարին, և զբազումս կոտորեաց 'ի նոցանէ, և զբազումս փախստականս արար, և զբազումս գերեաց. և դարձեալ էառ զԵրուսաղէմ ըզՀալէպ և զԴըմըշխ. և այս եղեւ օգնութեամբ փռանգ հեծելոյն. զի դեռ չէին ելեր ընդ Տաթարին, և այս այսպէս գործեցաւ :

Իսկ ընդ աւուրս ընդ այսոսիկ երեւեցաւ աստղ մի վարսաւոր, և ծագեաց նա յառաջ ընդ առաւօտն յաւուր շաբաթու 'ի տօնի Տապանակին. և օր ըստ օրէ աճէր վարս և շառաւեղ աստղին. զի յառաջագոյն ընդ առաւօտն ծագեաց, և ապա փոքր փոքր յամելով անկաւ 'ի ճաշու ժամն, և անդ ծագէր. և այսպէս զօրն յետ ձգելով հասաւ յերեկոյն, և 'ի մեծասան ժամու աւուրն ծագէր. և շառաւեղք վարսին հասանէր յարևելից մինչև 'ի մէջ երկրին. և այնչափ շատացաւ շառաւեղք վարսին, մինչ զի յայժ ահագին երևեր ամենայն աշխարհին. վասն զի ոչ էին տեսեալ այսպիսի զարմանալի նշան 'ի վերայ երկրի. և այսպէս յաւելլով 'ի շառաւեղն լայն և ընդարձակ եկաց մինչ 'ի մուտ ձմերան ամսոյն. և ապա որպէս աճեալ նոյնպէս սակաւ սակաւ պակասէր օր ըստ օրէ, մինչեւ ամենեւին հատաւ շառաւեղք վարսին և այլ ոչ երեւէր :

Իսկ Հուլիանոս Դ.անն յորժամ ետես, իմա-
ցաւ առ ժամայն, թէ վասն իմ ծագեաց աստ-
ղըս այն. և անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց
երկիր եպագ Աստուծոյ. վասն զի յոյժ վա-
խեցաւ յորժամ' սկսաւ պակասիլ աստղին շա-
ռաւեղքն. և ամենայն երկիր իմացաւ զայս, որ
որչափ Հուլիանոս Դ.անին ձին գնաց և երկիր
կալաւ. այնչափ երկայնացաւ շառաւեղք աստ-
ղին: Եւ ապա պակասեաց. զի տարի մի այլ
ապրեցաւ Հուլիանոս Դ.անն, և ապա պակասեաց
յաշխարհէս. թողեալ յետ իւր երեսուն որ-
դի: Դարձեալ և 'ի նոյն ամին յորում մեռաւ
Հուլիանոս Դ.անն, մեռաւ և բարի կին նորա
Տաւփռս խաթունն, և յոյժ տրտմութիւն եղև
ամենայն քրիստոնէից վասն նոցա:

## ԳԼՈՒԽ ԺԴ.

**Մահ կոստանդինի իշխանի հօր Թագաւորին Հա-
յոց Հեթմոյ: Յաջորդէ Հուլաւունն Աբաղան
որդի նորա: Մեռանի Տ. կոստանդին կաթուղի-
կոսն Հայոց: Յարձակումն փնտուխտարայ Սուլ-
տանին Եգիպտոսի 'ի վերայ Հեթմոյ. գերու-
թիւն Լեւոնի արքայորդւոյն Հայոց, ցաւ եւ
հեծութիւն Հեթմոյ ընդ կորուստ որդւոյն:**

Յաւուրս յայսոսիկ փոխեցաւ մահուամբ
'ի Քրիստոս Թագաւորահայրն Հայոց պարոն
կոստանդնեայն ալեւորեալ և լի աւուրբք. և ե-
թող սուգ մեծ բարեպաշտ Թագաւորին Հեթ-
մոյ. և այլ ամ որդւոցն և աշխարհիս Հայոց. վա-

ուն զի պարոն Կոստանդինն էր պատճառ շինու-
թեան աշխարհիս Հայոց . և հաստատութեան
Թագաւորութեան որդւոյ իւրոյ Հեթմոյ. վասն
որոյ կանգնեալ զքրիստոսապսակ Թագաւորն Հե-
թում, և մեծաւ պատուով Թաղեաց զՊարոն
հայրն իւր . որոյ Քրիստոս Աստուած փառա-
ւորեսցէ զհոգի նորա, և սրբոց իշխանացն մաս-
նակից արասցէ յիւր արքայութեանն .

Իսկ զկնի Հուլաւուն մահուանն յետ ամի
միոյ արարին մեծ խուռովութիւն, և եդին զԱբա-
ղանն Ղան, զաւագ որդի Հուլաւունին. և էր
Աբաղանն բարի անձնեայ և գեղեցիկ հասա-
կաւ 'ի մէջ երեսուն եղբարց իւրոց . և յաւու-
րս ղանութեան նորա էր առատութիւն ամե-
նայն իրաց ըստ ամենայն երկիր :

Իսկ ընդ աւուրս ընդ այսոսիկ փոխեցաւ
'ի Քրիստոս սուրբ և անբիծ հայրապետն Հայոց
տէր Կոստանդինն բարի անուամբ և կատարեալ
ծերութեամբ . որոյ աղօթիւք նորա տացէ Քը-
րիստոս խաղաղութիւն եկեղեցւոյ անուան
իւրոյ : Եւ զբարեխօսէր հոգի նորա և զսիրող ուղ-
ղափառութեան հաւատոյ, և ամենայն կարգաց
Եկեղեցւոյ իւր սրբոց Հայրապետացն դասակա-
կից արասցէ, լսելով զձայնն որ ասէ .« բարի ծա-
ռայ և հաւատարիմ, եկ մուտ յուրախութիւն
տեառն քո 'ի կեանսն յաւիտենից »:

Իսկ բան իմաստնոյն ասա կատարեցաւ , որ
ասէ . «'ի պակասել բարեացն և բարերարացն ,
առաւելուն ուխք չարութեանն »: Որպէս և
առ մեզ կատարեցաւ : Զի անօրէն և կատա-:

զի Սուլտանն Մորայ եկն բազում զօրօք 'ի Դիմբշիւ, և անտի յուղղորկեալ զեսպանս առ թագաւորն Հայոց վասն սիւնուլի ինչ, զի խըն-դրէր 'ի թագաւորէն, և թագաւորն Հայոց ոչ տայր. այլ պատուիրէր բանս նախատանաց... ծառայ ասելով նմա, այսպիսի պատճառաւ ։ Յորժամ Տաթարն զԳաղատա էառ, յայն ժա-մըն էին երկու ծառայք Սուլտանին Մորայ 'ի Գաղատա. անուն միոյն Փնտուխտար, և միոյն Աղուր. իսկ յորժամ իմացան թէ էառ Տաթա-րըն զԳաղատա, առեալ երկու ձի փախեան զեմ եղեալ գնալ 'ի Մոր ։ իսկ Տաթարն առեալ զփախուստ նոցա, գնացին 'ի վերայ նոցա ձիա-թօղք. իսկ Փնտուխտարն էր մօրուօք և ու-նէր մեշուռ ձի ։ և Աղուրն էր աղայ, և ձին ա-ղէկ. երբ իմացան թէ հասանել կամի Տաթա-րըն և զերկուսն ըմբռնել, Աղուրն իջեալ 'ի տանձիկ ձիայն, ետ 'ի Փնտուխտարն. և ինքն ե-լաւ 'ի վերա ձին. և առաց Փնտուխտարին թէ դու ել 'ի յաղէկ ձիդ և փախիր. ես տղայ եմ թէ զիս բռնեն, սպանեն ոչ, այլ տանին ծա-ռայ. յայն ժամն զինչ 'ի քեզ ճար լինի զիս գնեա. և առ ժամայն հասան Տաթարնին և ըմ-բռնեցին զԱղուրն, և տարան ծառայ. և ըղ-Փնտուխտարն ոչ կարացին ըմբռնել, զի ձին աղ-նիւ էր, փախեաւ և գնաց 'ի Մոր. և 'ի գնալն նորա 'ի Մոր մեռաւ Սուլտանն Մորայ. և եդին զՓնտուխտարն Սուլտան Մորայ ։ Զայն լուեալ Հայոց թագաւորին ... ծառայ ասէր նմա. և ոչ առնէր սէր. այլ կայր ընդդէմ նմա ան-

Եւ զայս լուեալ մեծամեծքն թագաւորին Հեթումի, բերկաւ սիրտն 'ի կարծիս. և յանձնարարին արտամութենէն որ յանկարծահաս գիւղեցաւ. և ոչ կարէր կանգնել 'ի սիրտ իւր. մինչ եկն 'ի սուրբ և 'ի գերահռչակ ուխտն միանձանց 'ի յԱկնա՛ց անապատս. և անդ միխիթարեալ սակաւ մի 'ի միւսեղէն եղբարց սուրբ Ուխտին կեցեալ աւուրս ինչ, մինչ եկեալ Թորոսին յերկիրս. զի անօրէն զօրքն Թուրքին զամենն պատուիրեալն 'ի Սուլտանէն արարին. զՍիս քաղաքն այրեցին որ է նստոց թագաւորին Հայոց. և ըղձգովելի մեծ եկեղեցին որ 'ի մէջ Սսոյ նկարաձգեալ այրեցին, և շիրիմս թագաւորացն քանդեցին. և զգանձս կողոպտեցին 'ի քրիստոնէից և զգաւառս գերեցին 'ի յերկրէն և 'ի գեղօրէից։

Եւ ապա յետ աւուրց ինչ գնաց զօրքն Թուրքին բազում գանձիւք և աւարաւ յաշխարհն իւրեանց, թողեալ զաշխարհս Հայոց կիսաւեր։ Իսկ որք առին զպարոն Լեւոն և գիտացին թէ անոյշ որդին է թագաւորին, տարան ուրախութեամբ առ Սուլտանն. և տեսեալ Սուլտանն ուրախացաւ. բայց ընդ պարոն Թորոսի սպանումն յոյժ տրտմեցաւ, և յոյժ բարկացաւ սպանողացըն. և սպանողքն ասացին թէ մեք ոչ գիտացաք թէ որդի թագաւորին է. զի զգաղտումն եսպան 'ի մեզանէ, և զբազումս խոցեաց, ապա յետոյ մեք ջան 'ի վերայ եդեալ սպանաք զնա։

Յետ այսորիկ խօսեցաւ Սուլտանն ընդ Լեւոնի և ասէ. քո հայրն ինձ ծառայ ասէր, և ոչ առնէր սէր. ծառայ այժմ եմ ես թէ դու.

զայս և այլ բազում բանս խորհրդաւորս խօսէր ընդ Թագաւորի որդւոյն. և ապա յետոյ յայտ մեծարանօք պատուեալ և օրհնեալ և ասացեալ բանս մխիթարականս չվախել ոչ ինչ, այլ կալ ուրախութեամբ աւուրս ինչ. և ապա դարձուցանել զնա առ հայրն իւր Թագաւորն Հայոց. և զայս ասացեալ փնտուխտար Սուլտանին առաքեաց զպարոն Լևոն 'ի Մար.

Իսկ բարեպաշտ Թագաւորն Հեթում առ ոչինչ համարեալ զայս ամենայն ինչ աղետից առ ժամանակ մի վասն նենգաւորութեան և երկմիտ իշխանացն, շահելով զբարս նոցա ուղղախոհութեամբ սրտի, առ իւր ունելով զայլ մանր ուստերան և զդստերան մխիթարէր 'ի նոցանէ սուտ մխիթարութեամբ. վասն շահելոյ զբարս իշխանացն և փախնելոյ զխորամանէ միայն նոցա սիրով. զի որ գրէր գիր յիշխանացն վասն պահպանութեան որդւոցն. և ուխտօք կապէր և առ Թագաւորն առաքէր. Թագաւորն գրէր պատասխանի և կարմիր կնքեալ 'ի Թուղթն, այնպէս առաքէր. և զայս լեզուն և ձեռքն միայն գործէին և շարժէին, բայց զսիրտն ինքն և Աստուած միայն գիտէին, թէ որպիսի կրակով լըցեալ էր. զի ոչ տեսանէր զայնպիսի գեղեցկապատկեր և զծաղկալից որդիսն իւր, առաջի իւր ոչ երեկոյ և ոչ 'ի վաղիւն և ոչ 'ի ժամ ճաշուն յուտել և յըմպել. և ընդ միտ ածեալ զանմխիթար աղէտս գեղեցիկ որդւոցն. զԹորոսի գեղեցիկ պատկերն և զխայելուչ հասակն, որ 'ի սրոյ բարձանեցաւ յանողորմ և յարիւնարբու

անօրինացն․ նմանապէս և զԼեւոնդի ահիւ և ան-
գոհիւ լինել 'ի մէջ այլազգեացն 'ի ծառայու-
թիւն․ զայս ամենայն զմտաւ ածեալ բարեպաշտ
թագաւորն Հայոց՝ այրեր անհնարին կրակով և
գալարէր աղիքն յաղագս սիրոյ որդւոցն որ ոչ
անսային․ և թաւալէր ընդ երկիր անմխիթար
ոգւով․ բայց գաղտ և 'ի ծածուկ․ զի մի գիտա-
ցեն նախանձոտ և տիրասպան իշխանքն և ու-
րախասցին ընդ տրտմութիւն թագաւորին։ Եւ
այս գործ գործեցաւ յաւուրս յամառնային յե-
ղանակին յետին ամսեանն, 'ի տօնի սրբոյ Ա-
ստուածածնին։

Եւ թագաւորն Հեթում համբերէր տուեալ
կրակով լսեալ սրտին և եկաց մինչեւ 'ի տօն սրբ
Առաքելոցն ծածկելով զտրտմութիւն իւր յանե-
կեղ իշխանացն, և ապա հրամայեաց կոչել զամե-
նայն իշխանսն զոր 'ի հեռի և զոր 'ի մօտ․ վասն
պատճառի ջուր օրհնելոյ 'ի քաղաքն Միսիս․ ժո-
ղովեցան ամենայն իշխանքն որք կային ընդ թա-
գաւորութեամբ նորա 'ի քաղաքն Միսիս։ Եւ
յորժամ գիտաց թագաւորն զգալուստ ամե-
նայն իշխանացն, ապա հրամայեաց գալ առաջի
իւր և նստել․ և յորժամ ամենեքին եկին և նստան,
հրամայեաց սպասաւորացն թագաւորն թէ այլ
են պակաս՝ կոչեցէք․ և նոքա ասացին․ տէրք
թագաւոր, ամենին այս են, որ քեզ առաջի կան․
և թագաւորն ստիպէր կոչել զպակաս իշխանսն,
և զպարոնայսն․ իսկ սպասաւորք թագաւորին
ոչ կարէին իմանալ զմիտս թագաւորին․ ապա
իշխանքն ասացին ցթագաւորն․ թէ զոր դուք

հրամայեալ էք և կոչեալ, ամենեն աստ է և չէ ոք պակաս ։

Իսկ Թագաւորն զարդարքին սրտիւ հայեցեալ յարօկոյս և յաջնկոյս. և ապա հրամայեաց կիտաձայն և սրտատուալից աչօք. Թէ երբ ամենքն աստ են, ապա ո՞ւր են Լեւոն և Թորոսն. յայնժամն սկսան իշխանքն անմխիթար և ծանըր ոգով ծեծել զկուրծանց գլուխս և վայ և եղուկ ասել. Յիշելով զգեղեցիկ որդիս Թագաւորին իւրեանց զմիւսն 'ի ծառայութիւն 'ի մէջ այլազգեաց. և զմիւսն սրախողխող եղեալ 'ի ձեռաց անօրինաց. և այնպիսի աղի և ողորմ արտասուօք լային ոչ միայն իշխանքն այլ և քահանայք և վարդապետք եկեղեցւոյ յերգ արկեալ զողբն Երեմիայ մարգարէին որ ասէ. ո՞ տայր զգլուխս իմ շտեմարանս ջուրց, և զաչս իմ աղբիւրս արտասուաց. զի նստեալ լայի զբեկումն ժողովըրդեան իմոյ։ Նա այսպէս վարդապետքն և քահանայք և իշխանքն լային. և ոչ ոք կայր 'ի մէջ նոցա որ մխիթարէր զնոսա. այլ կային տարակուսեալ 'ի ծանր սուգն բեկեալ սրտիւք ։

Իսկ մեծախելք և մեծահոգի Թագաւորն Հեթում, ինքն. յինքեան կանգնեաց զբեկեալ զօրացեալ սիրտն իւր, և ապա խօսեցաւ բանըս մխիթարականս 'ի սիրտս իշխանացն և քահանայիցն և վարդապետացն, այսպէս ասելով. գիտէք ամէն իշխանքդ և վարդապետքդ և քահանայքդ. որ Վարդանանցն պատերազմն վասն քրիստոնէից եղեւ. և այսչափ բազմութիւն հեծելոցն վասն քրիստոնէից նահատակեցան և եր-

կնաւոր պատուհասից արժանի եղեն. Նոյնպէս և որդւոյն իմ Թորոս վասն քրիստոնէից պատերազմեցաւ և վասն քրիստոնէից նահատակեցաւ. և խառնեցաւ 'ի դասս սրբոց Վարդանանցն. և նոցին պսակացն արժանի եղեւ: Զնա այլ մի լայք, այլ երանեցէք զնա, զի սիրեաց զնա Քրիստոս, և իւր սրբոցն պսակացն արժանի արար. Եւ զարիւն նորա ընդ արեան Մարտիրոսացն խառնեաց ժառանգելով ընդ նոսա զերկնից արքայութիւնն որ 'ի Քրիստոս Յիսուս:

Իսկ Լեւոն երէց որդին իմ որ է 'ի ծառայութիւն 'ի մէջ այլազգեացն. ինձ լաւ է Լեւոն 'ի ծառայութիւն, և Թորոս իւր արեամբն 'ի քրիստոնէից ազատած. քանի եւ այս ամէն երկիրս և ձեր արեանդ, և խղճիդ անկրգած. վասն զի դուք ոչ գիտէիք Թէ այս ցեղ չէր հանդիպելի, ինչ կայր Հայոց երկրիս առաջի: Զայս և այլ բազում բանս մխիթարականս խօսեցաւ Թագաւորն և դադարեցոյց զիշխանսն 'ի լալոյ և 'ի սգոյ: Իսկ բարեմիտ և բարեկամ իշխանք Թագաւորին նա և քահանայք և վարդապետք և եպիսկոպոսք որ էին ժողովեալք առ Թագաւորն վասն տօնի սրբոյ Յայտնութեան, և մխիթարեցան 'ի Թագաւորէն վասն որդւոյ Թագաւորազարմեացն. Նոյն և նոքա խօսեցան մխիթարական բանս բազումս և կանգնեցին ըզսիրտ Թագաւորին. և արարին զտօն սրբոյ Յայտնութեան 'ի միասին ուրախութեամբ մխիթարելով զԹագաւորն: Իսկ Թագաւորն ոչ կարէր դադարեցուցանել զսիրտն 'ի Թառանչելոյ և

յորդւոց հանելոյ վասն Լեւոնի որդւոյ իւրոյ որ էր 'ի Միր ծառայ. և ոչ գտանէր հնարս. թէ որպիսի հնարիւք կարէ զերծուցանել զնա ։ Եւ ապա դարձեալ կոչեաց զիշխանսն առ ինքն իւր թագաւորն. և եհարց զնոսա. թէ որով հնարիւք կարէ հոգալ վասն ազատելոյ Լեւոնի որդւոյ իւրոյ ։

Իսկ իշխանքն յանդգնեա եդեալ մեղադրեցին թագաւորին և ասացին, թէ Շահն ինչ գտանէ մեզ. որ դու վասն Շահայ զքո որդին կորուսեր. և զմեզ նոցա խղճին տիրացուցեր. այն լաւ չէ՞ր թէ այն մին գեօղն մեր չէր լեալ. քան մեք ամէն աշխարհի զրկեալ և ծառք եղաք. Իսկ թագաւորն հրամայեաց իշխանացն լռել յանդգնութեան խօսիցն. և լսել 'ի նմանէ զոր ինչ պատուիրեալ էին նմա 'ի ծածուկ ի Հայոց իշխանքն որ կային 'ի դուռն Աբաղայ Ղանին. զի ընդ աւուրսն ընդ այնոսիկ էին տաճիկ ամիրայք հոգայողք և բդեշխք (1) Ղանին. բարեկամ Մօրգուլին 'ի ծածուկ. և չարակամ թագաւորին Հայոց. և ամենայն քրիստոնէից. և Տաճիկ ամիրայքն և հոգացողնին գրեալ էին առ Սուլտանն Մսրայ 'ի ծածուկ. թէ չանացիր որ սիրով մէկ գիւղ թափես 'ի Հայոց թագաւորէն. և այն նախ կորստեան և իւր երկրին հերիք է և բաւական. մեք ասեմք և հոգամք առ Ղանըն որ զՀայոց թագաւորդ իւր ամէն երկրովըն աղէ բռնէ և հեծեալ յղարկէ և կոտորէ զամէնն ։

(1) Ցօրինակն Բիբլեկե .

Իսկ բարեպաշտ Թագաւորն Հայոց զայս ամենն գիտացեալ էր յառաջագոյն և լուեալ 'ի ձեռն ծածուկ գրոց Հայոց իշխանացն որ կան Արևելքն, և են բարեկամք և յոյժ սիրողք այս Թագաւորութեանս. զի գրեալ էին Հայոց իշխանքն առ բարեպաշտ Թագաւորն Հեթում, բանս մխիթարականս վասն որդւոցն և վասն երկրիս. և 'ի վերջն զայս, թէ ով տէրդ Թագաւոր, բան որ մեք եմք լսել. լու է քեզ նոյն որ քո մին որդին վասն քրիստոնէից մեռաւ և միւն ծառայ գնաց. և այս Տաճիկքս . . . յանօթ են զան, որ 'ի յայս գաւառս կան, քան զքո Թագաւորութիւնդ ամենն անցած է երկիրդ ընդ մին աւերած և քրիստոնէայքդ կոտորած. վասն զի այս Տաճիկ . . . յամենայն ժամ ասեն ընդ Ղանն թէ Հայոց Թագաւորն և Մորայ Սուլտանն մի են և մին խօսօք, և մեք Հայոց իշխանքս երդուեալ եմք Ղանին առաջի, թէ Տաճկանիդ սուտ են, մի՛ ստատար զոցա. և այժմ զայդ լսեցին և յանօթ եղեն Տաճկանիս. ու Ղանին սիրտն լուացաւ 'ի հետ քեզ միահետ. այսպ թէ լեալ էր որ խաբեալ էիր և լուր մին գաղտնի տուն էր առեալ. թող թէ Հէն գեղ որպէս նա ուզէր յայն ժամն քո թագաւորութիւնդ ամեն անցեալ էր. և մեք յանօթ եղեաք: Իսկ յորժամ զայս ամենայն լսեցին իշխանքն 'ի Թագաւորէն հրացան ամենն. և մեզայ ասացին Թագաւորին վասն ոչ գիտելոյ զայս ամենայն պատճառս բանին:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Թանագնացութիւն Հեթմոյ ընդ փեսաւխօսաց։ Տ. Յակոբ կաթուղիկոս Հայոց։ Դարձ Լեւոնի 'ի գերութենէն, ուրախութիւն Հեթմոյ, հրաժարումն 'ի թագաւորելոյ, մենակեցութիւն եւ մահ ։ Մեռանի եւ Դաւիթ արքայ Վրաց։

Եւ ապա յետ այսորիկ հասցեալ խրատ դեշխանեան թագաւորին Հայոց առաքեաց դեսպանս առ Սուլտանն Մսրայ. խնդրել վասն որդւոյն իւրոյ Լեւոնի. թէ ինչ է կամքն Սուլտանին. ինչ տայ և գնէ զորդին. իսկ Սուլտանն Մսրայ Փնդուխտարն թեղդեալ էր Տամփիկ, այլ յոյժ աղեկացեալ էր և խոնարհեալ էր. զթագաւորորդին Լեւոն խիստ աղէկ էր ուսեալ պահեալ կենօք և ամենայն իրօք. և յորժամ լուաւ զդեսպանացն զնուլն ուրախացաւ և ասաց. թէ պիտի որ զԼեւոնն առնիք յիւր հայրն և յիւր թագաւորութիւնն. իմ սիրելի ընկեր կայ առ Տաթարին ծառայ. որ ձեր ձեռօք 'ի վեր եկպալ. եթէ զնա ուղէք 'ի Տաթարէն ձեզ չխնայյեն, զնա բերէք Սղուր է անունն. և զԼեւոն տարէք. զայս լուեալ թագաւորն Հայոց 'ի դեսպանացն, խոկոյն զուգեաց բազում գանձս և ապատուական ինչս. և գնաց յարեւելք առ Աբաղայ Ղանն. և ասաց զամենայն գանգատն զոր արար Մսրցին ընդ նա և ընդ երկիրն իւր. ասաց և զխնդիրքն Սուլտանին վասն Սղուր ծառային, և ոչ կարաց թափել առ ժամն՝ բայց եկն

Դէլ երեւս կաթուղիկոս · և նորոգեաց զԱթոռ Սըրբոյն Գրիգորի լուսաւորչին · որոյ պահեացէ ըզնա Քրիստոս Աստուած սուրբ և անարատ անբիծ և ուղիղ հաւատով և ուղղափառ խոստովանութեամբ մինչեւ 'ի խորին ծերութիւնն հովուել զնոր ժողովուրդքս զհաւատացեալքս Սրբոյ Երրորդութեանն ։

Իսկ յայժմ եկն պարոն Լեւոն ազատեալ 'ի ծառայութենէ առ ժամայն ընդդէմ զնոյ բարեպաշտ և օրհնեալ թագաւորն Հեթում · և զամենայն թագաւորութեան իւրոյ պարգեւութիւն եա 'ի ձեռս որդւոյն պարոն Լեւոնի · և ինքն միայնաւորեալ սիրէր զվանս և զանապատս. և յետ աւուրց ինչ յանկարծակի գիւղեցաւ վէրք ինչ 'ի մարմին նորա · և յայտ նեղէր զնա և էր նա 'ի ապաս և յաղօթք հանապազ · մինչ զի առնել երկու զինքն կրօնաւոր և Մակար անուանեցաւ · և յետ սակաւ աւուրց փոխեցաւ 'ի Քրիստոս սուրբ և քրիստոսասէր բարեպաշտ թագաւորն Հեթում · և թաղեցաւ մեծ պատուով 'ի սուրբ և 'ի հռչակաւոր մենաստանին որ կոչի Դրազարկ · որոյ Տէր Աստուած փառաւորեսցէ զհոգի նորա ընդ սուրբ թագաւորացն և նոցին պսակացն որք արժանի եղեն, ընդ նոսին փառօք փառաւորեսցէ , և երկնային օթեւանացն ուր սրբոց կայանքն են արժանացուսցէ ։

Իսկ զկնի մահուան բարեպաշտ թագաւորին Հայոց · մեռաւ և Վրաց թագաւորն Դաւիթ · որ և կարծեմ թէ 'ի միում ամսեան գիւղեցաւ,

ալին ժամադրութեանն , առեալ . բերելք զինի ծովին չափի և միս ոտրին չափ ։ Ա.յլ և արտորին 'ի բազում անգամ . զի զչանն ազին բառնել տոլին աբեղայցն բերանով 'ի վանքին՝ վասն զինի չունելոյ ողորմելեացն . զի այս էր երդումն նոցա , կամ տալ զինի ըմպելոյ և տանելոյ որչափ ուզէին , և կամ այսպէս ըմբռնել զչանն ազին որպէս գրեցաք ։

Եւ այսպէս կային յալեկոծմանց վանքին արեւելից յանապատի գլխաւորէն . և զայս գիտացեալ իշխանացն Հայոց և Վրաց , գնացին միաբան առ Աբաղա Ղանն , և ընկեցին զաւարըն խաբեանց առաջի Ղանին և ասացին . կամ զթագաւորն տաղ 'ի ձեռս նոցա իւր հեծելովն , կամ զխաբեանցն կոտորել առաջի իւր , և ոչ անսանել զայնպիսի նախատինս , որ առնէին առ եկեղեցիսն խաբեանց և առ եկեղեցականսն . Նոյնպէս և այլ Տաճար զօրքն գանգատեցան ասել թէ 'ի դուրս զմեզ այլ կու ծեծեն զօրս թագաւորին , և զմեր ձիանն առնուն . Նոյնպէս և Ղանին գանգատեցաւ առաջի Հայոց և Վրաց զօրացն , այլ և իւր Տաճար գլխաւորացն և ասէ . Թագաւորն մեծացաւ և հպարտացաւ , և զմեզ չէ 'ի մտի . և զմեր սահմն չէ 'ի յառնել . և կամի առնել զերկիրս իւր , անսասան կալուածս և իւր հեծելոյն ։

Այսպէս հրամայեաց Աբաղա Ղանն Ասիրամանեին , որ յառաջին գրեցաք այն որ ունէր օթոյն անուանեցաւ , առնուլ հարիւր հազար հեծելոյ Տաճկաց . և նա դնէր իւր Ղանն 'ի ձեռն Ասի-

բամուներն նոյնպէս հրամայեաց Հայոց և Վրաց զօրացն գնալ իւրեանց ամենայն ուժով 'ի վերայ Թագաւորին և անխնայ կոտորել զնա, և առնուլ զամենայն ինչս նորա, և զինքն զԹագաւորն կենդանի տանել առ ինքն. և զայս լուեալ Հայոց և Վրաց զօրացն, յոյժ ուրախացան վասն ազատելոյ զերկիրն իւրեանց 'ի չարչարանաց Թագաւորին: Այլա կազմեցին զիւրեանց քաջալէս 'ի գործ պատերազմի. Նոյնպէս և Սիրամունն որդի Չաւրմաղանին, որ էր յոյժ սիրող քրիստոնէից, առեալ զնշան Ղանին հարիւր հազար հեծելօք, և յանկարծակի հասին 'ի վերայ Թագաւորին և անխնայ կոտորեցին ըզհեծեալս նորա, և առին զամենայն գանձս նորա, և զինքն եւԹն հարիւր մարդով և տարան առ Ղանն: Եւ Ղանն անուանեալ ծաղր արար ըզնա. եւս նման կին մի', և զանակ մի ծայրն կոտրած, և տուան մարդ ալահապան, և յուղարկեաց զնա 'ի մէջ Այլի ծովուն, որ կայ 'ի Հէր և 'ի Զարաւանդ գաւառի. և ասա կատարեցաւ բան մարգարէին որ ասէ. « Մարդ 'ի պատուի էր և ոչ իմացաւ »:

## ԳԼՈՒԽ ԺԵ․

Յաջորդէ Լեւոն զհայր իւր հաճութեամբ Աբագայ Ղանի ։ Ընթացք Լեւոնի առ նենգաւորս յիշխանացն ։ Յայտնութիւն նշխարաց մեծին Ներսիսի ։ Վերջ ։

Իսկ պարոն Լեւոն որդի Հայոց Թագաւորին գնաց առ աջի Աբաղայ Ղանին, և պատմեաց ըզմահ Թագաւորին. և յոյժ սիրեցեալ և պատուեալ եղև 'ի Ղանէն. և առեալ հրաման զԹագաւորելոյ 'ի տեղի հօր իւրոյ՝ դարձաւ և եկն յերկիրն իւր. և արար ժողով մեծ իշխանաց, եպիսկոպոսաց, քահանայից, վարդապետաց. 'ի մեծ և 'ի հոյակապ և 'ի հռչակաւոր քաղաքն Տարսոն. կոչեաց և զմեծ եպիսկոպոսապետն Հայոց զՏէր Յակոբ: Եւ այսպէս հրամայեաց ժողովել 'ի մեծ և 'ի փառաւոր սուրբ Եկեղեցին 'ի սուրբ Սոփի. եւ առնել հսկումն և աղօթս, և օրհնել զինքն Թագաւոր. ուստի և կատարեցին իւր կամօք երկնաւոր Թագաւորին Քրիստոսի. օրհնեցին և օծին եղովն սրբութեան զԹագաւորորդին Լեւոն՝ Թագաւոր 'ի վերայ ամենայն Հայոց. և եղեւ ցնծութիւն և ուրախութիւն մեծ ամենայն աշխարհիս Հայոց. և եղեւ նոր նորոգումն և նոր ուրախութիւն ազգին Ռուբինեանց.

Իսկ ինքն արքայածին արքայն Լեւոն, էր յոյժ խորիմաց և խելօք 'ի մանկութենէ իւրմէ. և ճանաչէր զամենայն բարեկամս և զչարա-

կամս իւր, բայց ոչ հանէր 'ի լոյս. այլ կայր լը-ռեալ մինչ ծնանել այն. որ յղացեալն էր ցաւօք: Վասնզի 'ի յիշխանաց թագաւորութեան իւրոյ կային ոմանք որ հոռոմ էին ազգաւ, և լցեալ էին մեծութեամբ գանձու և ամենայն ըն-տացուածովք, և յետ երից ամաց թագա-ւորութեան Ներսէ խորհեցան չար 'ի վերայ թագաւորին. և կամեցան զհայոց թագաւո-րութիւնն ջնջել, և նիզականք թագաւորել պեղծ և ու բացող ազգն հոռոմոց, ուստի քը-րիստոնեայքն և ասորք Քաղկեդոնիկեքն. զի ե-գեալ էին 'ի մտի քակել զկանոնայքս, և զհա-ւանեալսն 'ի յաղանդս նոցա դարձել. և զոչ հա-ւանեալսն բառնալ 'ի կենաց: Եւ զի ոչ միայն նիզականք էին որ առնէին զայս, այլ և խաբեալ էին 'ի վարդապետաց և 'ի քահանայից Հայոց և յիշխանաց ոմանց երկմտաց, կալ 'ի մի դաւա-նութիւն, և միաբան ներգել Հայոց: Այլ իր-նամք արարչին Աստուծոյ ոչ արար անտես զա-ղօթս ծառայից իւրոց, այլ պահեաց զարքայածին արքայն Հայոց զԼեւոն իւր ամեն թագաւո-րութեամբն հաստատուն և անփորձ 'ի չարեացն զոր խորհեալ էին. և նիզականք որ զչարոն էին խորհեալ՝ անկան 'ի գուբն զոր փորեալ էին. զի քրիստոսապսակ թագաւորն Լեւոն իւրով ի-մաստութեամբն ըմբռնեաց 'ի չարախորհուրդ մարդկանցն, և եգիտ գրեալ գիր զանուանս միաբանելոց 'ի չար խորհուրդն յայն, զոր Հայ և զոր Հոռոմ, և առաքեաց զմիամիտ ազատա-ւորսն իւր ըմբռնեաց զնոսա, զոմն եպսն, զոմն

# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՄԱՏԵՆԻՍ

Յամի եւթն հարիւրերորդի քսաներորդի թուականութեանս Հայոց (1271) . գրեցաւ աշխարհապատում տառս այս հրամանաւ սուրբ և փառաւորեալ հօր Ստեփաննոսի Ականց անապատիս . այլ և կամակցութեամբ փակակալի սուրբ անապատիս Վարդանայ և ամենայն եղբայրութեանս քահանայից եւ կրօնաւորաց . ձեռամբ տառապեալ գրչի Գրիգորոյ սպասաւորի բանին ։

Արդ աղաչեմք զպատահեալսդ 'ի սմա . որ ոք ընթեռնոյք զաշխարհապատում տառս զայս, յիշեցէք 'ի Քրիստոս զհայրն Ստեփաննոս . և զծնողսն իւր . ընդ նմին և զամենայն եղբայրութիւնս սորա Անապատիս , զքահանայքս և զկրօնաւորքս , և զմեղուցեալ գրիչս . զի դուք որ յիշէք զմեզ , յիշեսցէ և զձեզ Քրիստոս Աստուած յողորմութիւն իւր . ամէն ։

1-4-955



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

ԵՐՍ

